թեան, որ թոյլ չի տար որեւէ յաւելում՝ Սեպտ. 1էն առաջ :

Ընտանեկան ընկերակցութեանց ազգ. Միութիւն ալ կ'առաջարկէ ամէն բանէ առաջ աւելցնել ընտանեկան նպաստները :

Քրիստոնեայ աշխատաւորներու Դաշնակցութեան կարծիքով, կառավարութեան խոստումները « բաւարար երաշխաւորութիւն չեն ներկայացներ», ապրուստի գիները աժանցնելու համար : Իսկ Բանուորական Ուժը, որ ամէնէն զօրաւոր միութիւնն է Աշխատանքի Դաշնակցութենէն վերջը, շատ գոհ չըլլալով հանդերձ կառավարութեան որոշումներէն, կը նախընտրէ սպասել մինչեւ Սեպտեմբեր 1 : Աշխատանքի Դաշնակցութիւնն ալ վերապահ դիրք բռնած է առ այժմ, խրախուսելով հանդերձ բանուորական խլրտումները :

Թերթերը կը գրեն թէ հորթի միսը, որ 440 ֆրանք էր Օգոստոս 1ին, բարձրացած է 620 ֆրանքի :

## Ինչո՞ւ պատուհանէն վար նետուեցաւ ռուս վարժուհին

« ԹՌՉՈՒՆ ՄԸՆ ԷԻ ՎԱՆԴԱԿԻՆ ՄԷՋ »

Ամերիկեան թերթերը զարմանազան պատմութիւններ կը հրատարակեն Տիկին Օքսանա Քոզէնքինայի մասին, որ վար նետուած էր Նիւ Եորքի խորհրդային հիւպատոսարանի չորրորդ յարկէն, փախչելու կամ անձնասպան ըլլալու համար : Վարժուհին կը դարմանուի ամերիկեան հիւանդանոցի մը մէջ, խիստ հսկողութեան տակ : Պատասխանելով բարեկամի մը հարցումին, Տիկին Քոզէնքինա յայտարարած է .

— Ճար մը կը փնտռէի դուրս նետուելու համար : Վանդակի մէջ բանտարկուած թռչունի մը կը նմանէի : Կ'ուզէի դուրս նետուիլ :

Նոյն աղբիւրին համաձայն, Տիկինը այնքան ահուդողի մատնուած է որ չուզեր ոեւէ խորհրդային պաշտօնեայ տեսնել

— « Զեմ ուզեր տեսնել, կը վախնամ, կը վախնամ ... »

Մոսկուան ալ իր ուզած եղանակով կը պատմէ դէպքը : Պ. Մոլոթով յայտարարութիւն մը հրատարակեց որ կ'ըսէ թէ կատարուած քննութեանց համաձայն, Տիկին Քոզէնքինա եւ ուսուցիչ Սամարին ընտանիքով Նիւ Եորքէն մեկնած պիտի ըլլային Յուլիս 31ին, «Փոպետա» նաւով : « Բայց բոլորն ալ իրենց տուներէն հեռացած էին մէկ օր առաջ» : Վեց օր վերջը, «պարզ դիպուածով», հիւպատոսարանը երկտող մը ստացաւ Տիկին Քոզէնքինայէն որ կը խնդրէր ազատել զինքը սպիտակ ռուս աւազակներու կազմակերպութենէ մը որ կը կոչուի Տոլստոյեան հիմնարկ : Եւ կինը փրկուեցաւ :

Մոսկուայի ամերիկեան դեսպանը անմիջապէս հերքեց այս պատմութիւնը, համաձայն Ուաշինթընէն ստացած տեղեկութեանց : Ամերիկեան կառավարութիւնը քննութիւն բացած է, ամբողջ գաղտնիքը պարզելու համար : Միեւնոյն ատեն կը յայտարարէ .— «Անոնք որ Ամերիկա կը գտնուին եւ կը վախնան իրենց երկիրը վերադառնալ, իրաւունք ունին ապաստան գտնելու այստեղ » :

Մոսկուայի թերթերը կը յամառին «առեւանգում» ներկայացնել այս դէպքը, սպառնալով միջոցներ ձեռք առնել, փոխադարձաբար :

## ՔԱՆԻ ՄԸ ՏՈՂՈՎ

ՉԵԽՈՍԼՈՎԱՔԻՈՅ հողագործական նախկին նախարարը, Վլատիսլաւ Պրոհկ, փախաւ իր կնոջը հետ, ապաստանելով Գերմանիոյ ամերիկեան շրջանը : Եօթներորդ նախարարն է այս որ կը փախչի :

ՊԵՐԼԻՆԷՆ կը հեռագրեն թէ խորհրդային գաղտնի ոստիկանութիւնը բազմաթիւ ձերբակալութիւններ կատարած է Սաքսոնիոյ մէջ : Կալանաւորներուն մէջ կան շատ մը ընկերվարականներ :

ՖՐԱՆՍԱ մէկ միլիառ տոլար պիտի ստանայ համաձայն Մարշըլի ծրագրին, իբրեւ մասնաւճար առաջին տարուան :

ԱՄԵՐԻԿԵԱՆ նաւաբաժին մը ռազմափորձեր կը կատարէ Միջերկրականի մէջ :

ՀՈՒՆԳԱՐԻՈՅ կաթոլիկ հովուապետը, կարտինալ Մինծէնտի, յայտարարութիւն մը հրատարակեց որով կը սպառնայ բանադրել այն լրագրողները որ յարձակումներ կը գործեն Պապին կամ կարտինալներուն գործունէութեան դէմ, ճառերով կամ ուրիշ հրապարակային արտայայտութիւններով :

ՀԱՄԱՅՆԱՎԱՐԱԿԱՆ շարժումը կը ծաւալի Պիրմանիոյ մէջ, Հնդկաստանի սահմանագլուխին վրայ : Միւս կողմէ կը վախցուի որ զինուորական դիկտատուրա հաստատուի :

ԵԳԻՊՏՈՍԻ վերջին դէպքերուն առթիւ ֆրանսական կառավարութիւնը ծանուցագիր մը ուղղեց Գահիրէի դեսպանին միջոցաւ :

## ԴԱՇՏԱՀԱՆԴԷՍ

Կազմակերպուած Հ. Ե. Դ. Նոր Սերունդի Պուլվար Օտտոյի «Խատիսեան» խումբի կողմէ, այս կիրակի :

Կը ներկայացուի «ԵՕԹԱՆԱՍՈՒՆՆՈՑ ՓԵՍԱՑՈՒՆ» : Սէնթ Անտրէի օդասուն պարտէզին մէջ : Առնել 25 թիւ հանրակառքը եւ իջնել վերջին կայանը

×

Խանասորի արշաւանքին 51դր տարեդարձի առթիւ, կազմակերպուած Վալանսի Շրջ. Կոմիտէի կողմէ եւ մասնակցութեամբ Հ. Ե. Դ. Նոր Սերունդի, կիրակի, 22 Օգոստոս, առաւօտէն մինչեւ երեկոյ, «Chateau Lebret à Saint Peray, օդասուն վայրին մէջ :

Կը նախագահէ՝ ընկեր Ե. ԿՈՇԿԱԿԱՐԵԱՆ

Ճոխ պիւֆէ, գեղարուեստական բաժին, հաճելի անակնկալներով : Կարելի է ճաշը միասին բերել :

Օդը աննպաստ ըլլալու պարագային՝ հանդէսը տեղի կ'ունենայ «Ա. Ահարոնեան» ակումբին մէջ, նոյն օր, կէսօրէ ետք, ժամը 2ին :

Հաղորդակցութեան համար՝ Կրանժէն առնել հանրակառք, իջնել կամուրջի մօտ եւ 50 մեթր քալել :

×

Նախաձեռնութեամբ Տարօն - Սալնոյ Ձորի Հայր. Միութեան, 22 Օգոստոս, կիրակին ամբողջ օրը, Պէլվէտէրի օդասուն եւ ծառախիտ պարտէզին մէջ, Սէնթ Անտրէ :

Կը նախագահէ հայրենակից Ք. ԿԱՐԱՊԵՏԵԱՆ : Կը խօսի հայրենակից Ս. ՅԱԿՈԲԵԱՆ :

Զաւեշտ մը, « ԵՐԿՈՒ ԾԱՑՐԱՑԵՂՆԵՐԸ » :

Երգ, մեներգ, արտասանութիւն, անակնկալներ եւ ընտիր նուագ : Մուտքը ազատ է :

## ՄԵԾ ԽԱՐՈՒԿԱՀԱՆԴԷՍ

Նախաձեռնութեամբ Ֆրանսահայ Արենուշներու, այս կիրակի առաւօտէն մինչեւ երեկոյ, Ս. Աստուածածնի տօնին առթիւ : Կափի շրջան ԼԱ - ՔՈՒԻ մէջ :

Մասնակցութեամբ Մարսէյլի եւ Փարիզի հարիւր հայ - արենուշներուն, որոնք մէկ շաբաթէ ի վեր բանակումի եկած են : Կը նախագահէ Պելժիոյ հայ արենուշներու խմբապետուհի Օր. Սիրանուշ Աւագեան : Գեղարուեստական ճոխ բաժին :

Տեղի պիտի ունենան սկաուտական խաղեր եւ հաճելի անակնկալներ :

Կը հրաւիրուին մօտակայ վայրերը բանակումի եկող հայ սկաուտական բոլոր խումբերը եւ հասարակութիւնը :

Կափէն առնել օթօքար եւ իջնել՝ La Guinguette sur la route de Cap à Grenoble, ուր իրենց կը սպասեն հայ արենուշներ : (ԿՆԻՔ)

### ՆՈՐ ՍԵՐՈՒՆԴԻ ԵՐԵԿՈՅԹ ՄԱՐՍԷՅԼԻ ՄԷՋ

Հ. Ե. Դ. Նոր Սերունդի Մարսէյլի Շրջ. վարչութիւնը, ի պատիւ ընդհ. Ֆրանսայի Հ. Ե. Դ. Նոր Սերունդի օգափոխութեան կայանի մասնակցող ընկերներու բարեկամական հաւաքոյթ մը սարքած է այս երկուշաբթի երեկոյեան ժամը 8.30ին Café Noaillesի ներքնասրահին մէջ : Ներկայանալ հրաւէրով :

ԳՏՆՈՒԱԾ է հաշուապահութեան տեղեկ պաշտօնեան :




Imprimerie DER AGOPIAN, 17 rue Damesme (13)

Le Gérant : A. NERCESSIAN


## ՅՈՒՇԱՏԵՏՐ

ԱԼՖՈՐՎԻԼ .— Ֆ. Հ. Կապ. Խաչի Ալֆորվիլի մասնաճիւղի ընդհ. ժողովը տեղի կ'ունենայ 17 Օգոստ. երեքշաբթի իրիկուն ժամը 8.30ին ընկերուհի Ս. Անդրէասեանի բնակարանը, rue Emile Zola 13 : Անհրաժեշտ է բոլոր ընկերուհիներու ներկայութիւնը :

ՎԱԼԱՆՍ .— Հ. Յ. Դ. Շրջ. կոմիտէն ընդհ. ժողովի կը հրաւիրէ բոլոր ընկերները (Վալանսի) Օգոստոս 21ին, շաբաթ երեկոյ, ժամը 8ին Ա. Ահարոնեան ակումբին մէջ : Կարեւոր օրակարգ :

